

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

# ՆՄԱՆԸ ՉՈՒՆԵՑՈՂ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

## (Ֆրիդրիխ Էնգելսի մահվան 75-ամյակի առթիվ)

Նրանց ընկերությունն սկսվեց երիտասարդ հասակից և շարունակվեց մինչև իրենց կյանքի վերջը։ Նրանք ծնվել էին Գերմանիայի տարբեր քաղաքներում. Էնգելսի հայրը կապիտալիստ էր, հարուստ գործարանատեր, իսկ Մարքսի հայրը՝ դատապաշտպան։ Ի՞նչն էր նրանց այդքան մտերմացրել։ կոմունիզմի գաղափարը։ Նրանք երկուսն էլ հեղափոխականներ էին. երկուսն էլ իրենց կյանքը նվիրել էին բանվոր դասակարգի ազատագրման սրբազան գործին։

Մարքսն ու Էնգելսը միասին գրեցին հանճարեղ մի գիրք, որը ցնցեց ամբողջ աշխարհը և ռումբի պես պայթեց կապիտալիստների գլխին։ Այդ գիրքը, որ կոչվում է «Կոմունիստական մանիֆեստ», դարձավ բոլոր կոմունիստների սեղանի գիրքը, պայքարի զենքը։ Այդ գրքով նրանք սովորեցնում էին, որ բոլոր երկրների ճնշված, աշխատավոր մարդիկ պետք է միանան և միացյալ ուժերով պայքարեն հարուստների դեմ, խզեն բռնության շղթաները և ստեղծեն նոր, ազատ ու երջանիկ կյանք։ Եվ այդ գրքի հեղինակները կոչվեցին գիտական կոմունիզմի հիմնադիրներ։

Մարքսը բազմազավակ հայր էր, կապիտալիստները զրկել էին նրան դասախոսություններ կարդալու իրավունքից, աքսորել հայրենի քաղաքից։ Նրա ընտանիքը ապրում էր նյութական ծանր պայմաններում։ Եվ ամբողջ կյանքում նրան դրամական օժանդակություն էր ցույց տալիս Էնգելսը։ Նա տարիներ շարունակ հոդվածներ էր գրում ու տպագրում Մարքսի անունով, որպեսզի հոնորարը ուղարկվի Մարքսի ընտանիքին .

Էնգելսը երեխաներ չուներ և շատ էր կապված Մարքսի երեխաների հետ։ Երբ Էնգելսը հյուր էր գալիս նրանց, երեխաները չտեսնված սիրով էին շրջապատում նրան։ Մարքսն ու Էնգելսը իրենց ազատ ժամերին զբոսնում, զրուցում էին երեխաների հետ, փոքրերը թռչում էին նրանց ուսերին և «ձի-ձի» խաղում։

Եթե չլիներ Էնգելսի օգնությունը, Մարքսը չէր կարող ավարտել իր «Կապիտալ» եռահատոր աշխատությունը։ Նույնիսկ Մարքսի մահից հետո, երբ «Կապիտալի» երկրորդ և երրորդ հատորները թերի էին մնացել, Էնգելսը երկար տարիներ աշխատեց նրանց վրա, ավարտեց և հրատարակության հանձնեց։

Ահա թե ինչպիսի անձնվեր ընկերներ էին գիտական կոմունիզմի երկու հանճարեղ հիմնադիրները։

Նրանց այդ նմանը չունեցող բարեկամության մասին Վ. Ի. Լենինը գրել է. «Հնագույն ավանդությունները պատմում են բարեկամության զանազան սրտաշարժ օրինակների մասին։ Եվրոպական պրոլետարիատը կարող է ասել, որ նրա գիտությունն ստեղծել են երկու գիտնականներ ու մարտիկներ, որոնց հարաբերությունները գերազանցում են հնադարյան մարդկանց բոլոր ամենասրտաշարժ պատմագրույցները մարդկային բարեկամության մասին»։

Ն. ՄԱՐԳԻՍ ՊՈՂՈՍՅԱՆ



# Բարի լույս, ԼԵՌՆԵՐ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Մութի մուշտակը ընկնում է կրկին,
Ամպը փախուստի ճամփան է բռնել,
Լուսաստղը ժպտում առավոտ ծեգին
Եվ շշնջում է.— Բարի լո՜ւյս, լեռնե՛ր:

Արևի հոտ են ծաղիկներն առնում,
Գիշերվա մահճից ուզում են ելնել,
Շողերին նրանք ժպիտ են խառնում
Ու շշնջում են.— Բարի լո՜ւյս, լեռնե՛ր:

Հավքը թևերի ժիր թպրտումից
Լուռ տատանվում են անթիվ տերևներ,
Հովն արթնանում է վաղորդյան քնից
Ու շշնջում է.— Բարի լո՜ւյս, լեռնե՛ր:

Զգաստ կանգնել է քարայծը քարին,
Կարծես ուզում է անդունդից թռչել,
Առաջին շողը պոզերի ծայրին՝
Ձեզ բարի լույս է ավետում, լեռնե՛ր:

Բացվում են մեկ-մեկ ձորերը հերթով,
Դառնում են լույսի լայնաբաց դռներ,
Արևն է գալիս իր տաք շքերթով
Ու բարբառում է.— Բարի լո՜ւյս, լեռնե՛ր:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Եվ առավոտի շողերին վարար
Խառնելով ուրախ մանկությունը մեր,
Մեր ճամբարների աղմուկով ահա
Մենք շեփորում ենք.— Բարի լո՜ւյս, լեռնե՛ր:

---

# ՃԱՄՓԱ ԸՆԿԱՆՔ ԵՐԵՔՈՎ

ԱԼԵՔՍԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

ս ու Հակոբը նիհար ենք, կարող ենք ընդամենը տասն անգամ ձգում վարժություն կատարել պտտաձողի վրա ու քառասուն կիլոգրամ ծանրություն պոկել գետնից: Իսկ Գնելը լիք-լիք ուսեր ունի, հաստատակամ հայացք, որովհետև քսան անգամ ձգվում է պտտաձողի վրա ու վաթսուն կիլոգրամ ծանրություն պոկում գետնից: Դրա համար էլ արշավի նախօրյակին, խմբերի բաժանվելիս, կռիվ էր գնում Գնելի համար:

Գնելը մեզ հետ գա:

Չէ՛, մե՛զ հետ գա:

Ո՞նց թե ձեզ հետ:

Գնելի հետ լինելը այնքան մեծ նշանակություն ունէր, այնքան առավելություն էր ամեն մի խմբի համար, որ ղեկավարը որոշեց վիճակ գցել.

Որպեսզի չկռվեք:

Իմ ու Հակոբի բախտը բերեց: Դրա համար էլ մյուսները վրա են տվել.

արդեն մյուս լեռները թվուկներ են երևում: Միայն Արարատն է շարունակում բարձր մնալ: Ծաղկանց լեռները ներքևից ահագին բարձր էին: Այժմ այնքան են ցածրացել, որ նրանց այն կողմի փեշերի անտառներն էլ են երևում: Ու միայն Արարատի մյուս կողմն է շարունակում մնալ գաղտնապահ: Ներքևում շոգ ամառ է: Իսկ այստեղ կողքից վազող առվակի ափերին սառույցներ կան: Ջրի սառնությունից գլուխ է ցավում: Ա՜յ քեզ կարմանք: Գնելի դեմքը սևացել է: Աչքերը ուռել են ու քիչ դուրս ընկել, ավելի լցվել հոգնածության պղտորությամբ: Լավ նշան չէ: Եթե Գնելը հոգնեց, ուրեմն ես ու Հակոբը իսկի չենք դիմանա: Ափսո՜ս: Եթե կարողանանք տեղ հասնել, գագաթին կթողնենք բրոնզե «Էրեբունի—2750»-ը: Կգրենք մեր անունները: Ով գիտե, թե ինչ կպատահի մեր մոլորակին: Այս բարձրության վրա բրոնզե գրերը կմնան: Հետո գուցե երկրագունդ այցելեն ուրիշ մոլորակի բնակիչներ: Կգտնեն մեր այս հետքերը ու կիմանան, որ երեք տղաներ այս սարին պահ են տվել իրենց քաղաքի բրոնզե պատմությունը:



Է՜հ, աշխարհին ոչինչ չի պատահի: Հարկավոր է պարզապես բարձրանալ մինչև վերջ ու ապրել դրա հաճույքը: Ես նույնիսկ ուզում եմ, որ վերելքը անտանելի դժվար լինի: Հետաքրքիր է: Մեկ-մեկ ինձ թվում է, որ այս քարերի հետ գահավիժելն էլ է հետաքրքիր: Տեսնես ի՞նչ է մտածում գահավիժող մարդը: Ի՞նչ հետաքրքիր ապրումներ կունենա:

— Տուր ի՛նձ, Հակո՛բ:

— Մի քիչ էլ տանեմ:

Զարմանալի է: Գնելը արդեն երկու անգամ նստել է, իսկ Հակոբը դողդողացող ծնկներով շարունակում է բարձրանալ: Վերցնում եմ բեռը: Նոր եմ զգում, որ Գնելը ճիշտ կողմնորոշվեց: Հետո մտածում եմ, որ գուցե Գնելը բոլորովին էլ խորամանկություն չարեց բեռը ներքևի հարթ տեղերում կրելով: Մի կողմից էլ գագաթը արդեն այնքան մոտիկ է, որ երևում են նրա կողերին ցից-ցից կանգնած սալաքարերը: Ավելի ճիշտ՝ երևացող բոլոր լանջերն էլ ամբողջովին այդպիսի ցից-ցից քարերից են կազմված: Իսկ քարերը պոչերով մըխված են իրար տակ ու միայն դրանով են պահվում: Եթե մի սալաքարը քաշեն, երևի ողջ լեռնագագաթը գմբեթի նման փուլ գա: Եվ ինչպե՞ս է, որ կանգուն է մնացել:

Գնելը համրող ժպիտով նստում է.

— Տղե՛րք, եթե գրերը պահենք այստեղ ու իջնենք, ո՞վ կիմանա, որ չենք բարձրացել:

Հակոբը լավ լսեց նրա ասածը, բայց նայում է նրան, ատամները սեղմում ու կայրույթից դողում է.

— Ի՞նչ:

Հետո նույն կայրույթով ու հարցականով նայում է ինձ: Ես անցնում եմ նրա մոտով ու շարունակում բարձրանալ:

Կատակ արեցի, դուք էլ ճիշտ կարծեցիք:

Ու Գնելը քարշ է գալիս մեր ետևից: Թվում է, թե նա կարող է քայլել, բայց ուժերը պահում է, որ հետո հանկարծակիի բերի մեզ ու առաջ անցնի: Բայց շուտով նորից է Գնելը ետ դառնալ առաջարկում.

— Հասել ենք, էլի, մի քիչ էլ որ բարձրացանք, ի՞նչ կհասկանանք: Մյուսները երևի վաղուց ետ են դարձել:

— Ետ գնա, քեզ ո՞վ է բռնել: Մի՛ վախեցի, բոլորին կասենք, որ դու առաջինն ես հասել գագաթին, որ դու ես մինչև վերջ բարձրացրել գրերը: Գնա:— Ու Հակոբը ինձ է մոտենում:— Օգնե՞մ:

— Ճիշտն ասած, դեմ չեմ:

Գնելը կանգ է առնում.

— Ես չեմ գա:

— Մի՛ արի:

— Դուք էլ չեք հասնի վերջին: Վերևում մի քարի ետևում կնստեք, հետո էլ կպարծենաք, թե հասել եք:

Առանց պատասխանելու բարձրանում ենք: Ես էլ, Հակոբն էլ ավելի ենք սևացել, քան Գնելը: Դա նշանակում է, որ մենք նրանից շատ ենք հոգնած, որ նա մեզնից դիմացկուն է: Բայց ինչո՞ւ չեկավ:

Այս անգամ սայթաքում եմ ես: Քարերը ոտքերիս տակից հեղեղ դառնալով հոսում են ցած, իսկ ինձ պահում է Հակոբը: Նրա բարակ բազուկները թել-թել պրկվել են: Դրանից ավելի է մգացել-մգլել աչքերի պղտոր հոգնածությունը: Խեղճ տղա: Նա նկատում է խղճացող հայացքս ու կայրանում.

— Ի՛նձ տուր բեռը:

Չեմ տալիս: Բարձրանում ենք: Գնելը մեր չափ հոգնած չէր, բայց չեկավ: Ոչ մեկը չի հավատա, որ նա



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

չհասավ գագաթին: Մանավանդ՝ աղջիկները: Կնայեն նրան, կնայեն մեկ ու կծաղրեն.

— Նա չկարողացավ, իսկ դուք բարձրացա՞ք:

Աղջիկները պետք է ամեն տեղ տղաների հետ լինեն, որ իսկական ուժը չչափեն կշեռքով, պտտաձողի վրա ձգվելով ու ծանրություն բարձրացնելով:

Հասնում ենք սալե աստիճաններին: Իրոք որ սարսափելի է նայելը: Վախենում ենք մատով դիպչել առաջին քարե աստիճանին, որի նմանների վրայով մագլցելու ենք մինչև վերջ, ուր առայժմ միայն սև, փայլուն թևերով կռնչացող ուրուանման թռչուններ են պտըտվում:

Նայում ենք իրար: Ոչ մի երաշխիք չկա, որ դիպչելուց հետո ամբողջ լեռնագագաթը չի փլվի:

— Մեկնից առաջ բարձրացողներ եղե՞լ են:

— Իհարկե:

Մենք էլ ենք փորձում: Առաջին սալաքարը չի շարժվում: Երկրորդն էլ, երրորդն էլ... Սիրտ ենք առնում: Քսան, թե քսանմեկերորդ քարը դողում է, պոչը խըզկալով սկսում է դուրս սահել պահող քարերի տակից:

— Հակո՜բ...

Նա էլ ինձ է այդպես կանչում: Ու չգիտենք ինչ խորհուրդ տալ իրար: Երկուսս էլ ոտներս դեմ ենք անում ներքևի սալաքարին ու պրկված ձեռքերով փորձում կանգնեցնել դուրս սահողը, որ դանդաղ-դանդաղ ծանրանում է երկուսիս թևերին:

— Հակո բ...

Ուզում եմ ասել, որ ինքը շուտ թողնի ու ցած իջնի: Ու դրա փոխարեն միայն անունն եմ կարողանում տալ: Նա էլ ինձ է կանչում ու չի շարունակում: Իսկ քարը արդեն դժվարացնում է շնչելը: Հիմա, հիմա երկուսիս ոսկորներն էլ կջարդվեն ու վերջ: Ինչ-որ տեղից լսում եմ ոսկորներիս խրճոցը:

-- Հակո՜բ...

Ու ինձ թվում է, որ եթե Հակոբը մի կողմ փախչի, նրանից հետո ես էլ կհասցնեմ փախչել: Ու համոզված եմ, որ եթե առաջ ես փախչեմ, Հակոբը չի հասցնի խուսափել ու...

— Հակո՜բ...

Իսկ նա ավելի պահանջկոտ ու ավելի կայրացած իմ անունն է գոռում:

Իսկ սալաքարը շրխկում է ու կանգ առնում: Հակոբը գրկում է ինձ: Ես էլ նրան եմ գրկում: Համբուրում ենք իրար: Չենք խոսում: Ոչ էլ կարողանում ենք թաքցնել աչքերիս թացությունը: Ինչ լավ է, որ տեսնող չկա, կարող ես լացել ու սիրտդ հանգստացնել, ծաղրող չկա: Կողքիդ մարդը առանց բացատրության հասկանում է քեզ:

Բերանով շնչելու խորհուրդ չէր տալիս արշավի ղեկավարը, իսկ մենք կլանում ենք օդը: Կարծես թե արդեն հասել ենք վերջին: Եվ թվում է, թե իրոք այդպես է, որ սրանից այն կողմ շարունակելը ավելի դըժվար չի լինի, թեև առջևում ուղղաձիգ պատ է:

Գրերը ասնում ենք երկուսով: Մեկս բարձրանում է մի աստիճան, վերցնում գրերը, վերև քաշում մյուսին: Հերթով դառնում ենք առաջին բարձրացող: Արդեն քիչ ենք վախենում շարժվող քարերից: Երկուսս էլ հավատացած ենք, որ դրանց դեմն առնելու փորձ ունենք արդեն:

Ամենավերջին աստիճանասալի վրա կանգնում ենք ու փորձում վեր-վեր թռչելով տեղահան անել: Դժվար է: Հետո պգում ենք, որ դա անհնար է: Եթե այդ սալաքարը շարժվի, նեքևինները իսկույն տեղահան կլինեն, ու... գմբեթաձև լեռնագագաթը կթափվի անդունդը, որ լիքն է քանի՜ հազար տարվա կարծրացած մոխրագույն ձյունով:

Հակոբը ամրացրել է բրոնզե գրերը՝ «ԷՐԵԲՈՒՆԻ--2750», ու ձեռքը պարզել ինձ.

— Կավիճ չունե՞ս:

— Պետք չէ:--Ցույց եմ տալիս սալաքարին, մեկնից առաջ եկածների գիրը.

«Ճամփա ընկանք երեքով: Հետո պարզվեց, որ երկուսով ենք»:

# Կ Ա Ք Ա Վ Ը

*ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ*

Մի ժամանակ,
Հին ժամանակ,
Ինչքա՞ն առաջ՝ ի՞նչ իմանանք,
Երգ չսիրող ու խոպածայն հավք ու թռչուն
Չար նախանձից Արծըվի մոտ գանգատվեցին.
«Կաքավները մեզ չեն տալիս հանգիստ ու քուն,
Արթնանում են առավոտվա ժամը վեցին,
Ամբողջ օրը հա՛ երգում են, գլուխ տանում,
Անպետքները չեն հասկանում,
Որ իրենց պես
Մենք անբան չենք, գործ ենք անում»:

Երգ չէր սիրում Արծիվն ինքը
(Ինքն էր, իր որսն ու երկինքը),
Եվ նա խոժոռ շուրջը նայեց,
Տեղնուտեղը հրամայեց,
Որ այսուհետ չերգեն նրանք.
«Գլուխներըս ճիշտ որ տարաք»:

Ու լուռ մնաց ամեն կաքավ
Սար ու ձորից էլ ձայն չեկավ,
Այսպես անցան ամիս, տարի...
Եվ ամպ նստեց սար ու քարի:

Ամպ չէր սիրում Արծիվն ինքը.
(Եթե պարզ չէ իր երկինքը,
Ինքը ինչպե՞ս էլ որս անի,
Ո՞նց զոհերին գանազանի):
Եվ նա դեմքին կրկին հագավ
Երգ սիրողի դիմակ սիրուն,
Ու թույլ տվեց՝ ամեն կաքավ
Նորից երգի քար ու սարում:

Ամեն կաքավ ուզեց երգել
Առաջվա պես, հնի նման.
(Չէ՞ որ արդեն չկար արգելք
Եվ կար արդեն այլ հրաման):

Թվաց՝ պիտի նորից տեղան,
Նորից լողան
Ու գեղգեղան
Նրանց նախկին երգերը ջինջ,
Բայց ստացվեց լոկ «կաղ-կըղա»—
Լոկ «կաղ-կըղա», ուրիշ ոչինչ...




*ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Հովհաննես Վանական գիտնականի, Խորանաշատի դպրոցի, իշխանուհի Վանենիի, Կիրակոս պատմիչի, մոնղոլական գերության և այլ բաների մասին

* * *

*«Լինում է, չի լինում...» այսպես են սկսվում բոլոր հեքիաթները: Բայց ես ինչպե՞ս սկսեմ այն հեքիաթը, որը, իրոք, եղել է: Ես այն կսկսեմ այսպես.*

*Եղել է, եղել է մի հայ գիտնական՝ Հովհաննես Վանական անունով:*

*Եղել է, եղել է մի դպրոց՝ Խորանաշատ անունով:*

*Եղել է, եղել է մի իշխանուհի՝ Վանենի անունով:*

*Եղել են, եղել են օտար նվաճողներ:*

*Եվ եղել է, կա ու կլինի մի գրասեր ժողովուրդ, որ կոչվում է հայ ժողովուրդ:*

*Այն հայ գիտնականը, որ կոչվել է Հովհաննես Վանական և որը իրոք եղել է, ապրել է մեզանից ավելի քան յոթ հարյուր տարի առաջ: Նա շատ է սիրել իր հայրենիքը և նրան լավ ծառայելու համար մտածել է հիմնել մի դպրոց և ձրի դաս տալ աշակերտներին:*

*Այն ժամանակ Հայաստան աշխարհը գտնվում էր թշնամիների հարձակման վտանգի տակ, ուստի Հովհաննես Վանական գիտնականը, երկար որոնումից հետո, կանգ է առնում պատմական Հայաստանի Տավուշ բերդի մոտ, մի բարձր քարաժայռի գագաթին, Լորուտ գյուղի դիմաց, և քարաժայռը փորելով, այն-*

տեղ բացում է մի քարայր, կառուցում փոքրիկ վանք և հավաքում աշակերտներ:

Շատ չանցած նրա համբավը տարածվում է հեռուները և ամեն կողմից նրա մոտ են հավաքվում նորանոր աշակերտներ: Քարայր-դպրոցն ու փոքրիկ վանքը այլևս չեն կարողանում տեղավորել նրանց: Հովհաննես Վանական գիտնականը, աշակերտների և մոտակա գյուղացիների օգնությամբ, սկսում է կառուցել նոր վանք-դպրոցներ՝ այդ նույն բարձունքի ստորոտում: Այստեղ այնքան շատ դպրոցական խուց ու խորաններ են կառուցվում, որ վանքը կոչվում է Խորանաշատ:

Բայց ահա մի օր էլ Լորուտ գյուղի բնակիչները սարսափահար գալիս, լցվում են Խորանաշատի դպրոցը, հայտնում, որ մոնղոլական զորքերն ավերելով ու սպանելով մտել են մոտակա գյուղերը: Հովհաննես Վանական գիտնականը, նրա աշակերտները և Լորուտ գյուղից փախածները, մեծ ու փոքր, կին ու երեխա, բարձրանում են ծերպի կատարը և տեղավորվում հին դպրոցում:

Թշնամու զորքը գալիս, գալիս՝ դեմ է առնում այդ բարձրաբերձ դպրոց-բերդին և չկարողանալով վեր բարձրանալ, շրջապատում է այն ու նստում այնտեղ, մինչև որ վերևում սպառվում է ջրի ու սընունդի պաշարը:

— Ինչո՞ւ եք իզուր տեղը տանջում ձեզ ու ձեր երեխաներին,— ներքևից բղավում են մոնղոլ զինվորները,— ցա՛ծ իջեք, մենք բոլորիդ կյանքն էլ կըխնայենք և ձեզ ազատ կարձակենք:

— Ես պատրաստ եմ իմ կյանքը զոհել ձեզ,— ասում է Հովհաննես Վանական գիտնականը յուրայիններին և իջնում է մոնղոլների մոտ՝ ստուգելու նրանց խոստումը:

Մոնղոլները նրան հարցուփորձ են անում, ներում նրա կյանքը և համոզում, որ նա մյուսներին էլ կանչի ներքև: Գալիս են մեծահասակ աշակերտներից երկուսը: Մոնղոլները նրանց կյանքերն էլ են ներում: Այսպես քիչ-քիչ գալիս են բոլորը: Եվ երբ ծերպի գագաթին ոչ ոք չի մնում, մոնղոլների մեծը խորամանկորեն ժպտում է և հրամայում բոլորին ծեծել ու քշել դեպի գերություն:

* * *

Եղել են, եղել են հայկական մեծարժեք ձեռագըրեր, որոնք Հովհաննես Վանական գիտնականը, որ ինքն էլ իրոք եղել է, հավաքել է տարբեր կողմերից կազմել դպրոցական գրադարան: Մոնղոլները գերում են նաև այդ գրադարանը: Նրանք լավ գիտեին, որ եթե ծախելու լինեն և՛ գերիներին, և՛ այդ գրքերը, ապա բարձր գին կստանային նաև ձեռագրերի դիմաց:

Թե ի՞նչ եղան Խորանաշատի բոլոր գերիները, հայտնի չէ, հայտնի է միայն, որ նրանց մի փոքրիկ մասն ազատվել է: Այդ մասին տեղեկություն է տալիս այն ժամանակ ապրած հայ պատմիչ Կիրակոս Գանձակեցին: Նրա գրած «Հայոց պատմությունից» տեղեկանում ենք, որ ինքը եղել է Հովհաննես Վանական գիտնականի սիրած աշակերտներից մեկը: Երբ մոնղոլները գերիների մի մասին վաճառում են, իսկ մյուս մասին սպանում կամ քշում դեպի անհայտ կողմերը, Կիրակոս Գանձակեցուն և նրա մի ընկերոջը պահում են իրենց մոտ՝ որպես քարտուղարներ: Մի մութ գիշեր, երբ Հայոց լեռնաշխարհը թաղված է լինում խավարի ու քնի մեջ, Կիրակոսն ու իր ընկերը փախչում են մոնղոլական գերությունից և ազատվում: Հետագայում, Կիրակոս Գանձակեցին որոշում է գրել իր «Հայոց պատմությունը», նրա մեջ պատմելով նաև Հովհաննես Վանականի դպրոցի մասին: Այդտեղից իմանում ենք, որ հայ ժողովուրդը մեծ գումար է հավաքել և գերությունից ազատել Հովհաննես Վանականին, որը, դրանից հետո երկար ժամանակ աշխատել է որպես ուսուցիչ և մեռել խոր ծերության մեջ: Նրա թաղման ժամանակ հավաքվել են նաև նրա կենդանի մնացած աշակերտները, նրանց հետ և Կիրակոս Գանձակեցին, ու թաղել նրան Խորանաշատի ծերպի բարձր գագաթին, ուր մի ժամանակ դաս էր տալիս ինքը՝ Հով-





Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

հաննես Վանականը՝ շրջապատված սիրելի աշակերտներով:

Մեր հեքիաթը սակայն այսքանով չի ավարտվում: Այն շարունակվում է, որովհետև մոնղոլների տարած գերիներից, հայ ժողովրդի թափած մեծ ջանքերի շնորհիվ, ազատվել է նաև մի ուրիշը, որն ապրում է մինչև այսօր և որին կարող է տեսնել ու լսել յուրաքանչյուր ցանկացող: Դա մի ձեռագիր է, որը պահվում է Մաշտոցի անվան Մատենադարանում և կրում է 4823 համարը: Պարզվում է, որ այս ձեռագիրը ժամանակին գտնվելիս է եղել Խորանաշատի գրադարանում...

* * *

Եղել է, եղել է մի գրասեր հայ իշխանուհի՝ Վանենի անունով: Տեսնելով Հովհաննես Վանականի թափած ջանքերը՝ Խորանաշատի դպրոցի վրա, 1234 թվականին նա գալիս է այնտեղ և այդ դպրոցին նվիրում մի մեծարժեք, նկարազարդ, մագաղաթյա ձեռագիր: Ահա այդ ձեռագիրն է, որ գերվել է Հովհաննես Վանականի, Կիրակոս Գանձակեցու և մյուսների հետ, իսկ հետո փրկվելով, պահպանվել ու հասել է մեզ: Մինչև հիմա էլ այդ ձեռագրի 317-րդ թերթի վրա կարելի է կարդալ գրասեր հայ իշխանուհու գրած տողերը. «Ես, Վանենի... դուստր Ջաքռո Խաղբակյանց... ետու զծախս սուրբ Ավետարանիս ստանալ զսա ինձ զավակ հոգևոր...» և այլն: Այս տողերը գրված են հին հայերենով, որոնք նշանակում են՝ «Ես, Վանենիս... Խաղբակյան Ջաքուռի դուստրս գնեցի այս ավետարանը, որպես հոգևոր զավակ...» և այլն: Այնուհետև խոսվում է նվիրաբերության, Խորանաշատի և Հովհաննես Վանականի մասին:

Այս ձեռագրի մեջ կա մի ուրիշ հիշատակարան, որը գրված է հենց իր՝ Հովհաննես Վանական գիտնականի ձեռքով: Այդտեղից պարզվում է, որ գերությունից հետո նա՝ Հովհաննես Վանականը, լինում է Թիֆլիսում: Եվ ահա այդտեղ մի օր մոնղոլները վաճառքի են հանում Խորանաշատից հափշտակած իշխանուհի Վանենիի նվիրած ձեռագիրը: Թիֆլիսի հայերը մեծ գումար են հավաքում, գնում այդ ձեռագիրը և նորից նվիրում Հովհաննես Վանական գիտնականին: Նա էլ այդ մասին ձեռագրի 155-րդ թերթի վրա գրում է. «Ես՝ Վանականս, գրեցի իմ ձեռքով Թիֆլիս քաղաքում... Այս ավետարանը գերված էր Տավուշում (Թովուզում)՝ Մուղանի թաթարների կողմից: Եվ ահա երեք տարի անց՝ 1236 թվականին նրանք անվնաս բերեցին այստեղ և վաճառեցին: Պատվելի Սարգիս երեցը և մյուս քահանաները, ժողովրդական տանուտերերը, մեծ ծախսով և շատ ջանքեր թափելով, գնեցին այն և նվիրեցին ինձ...»

Երևակայել է պետք, թե ինչպիսի՜ մեծ հուզմունքով է գերությունից ազատված Հովհաննես Վանականը մի օր Թիֆլիսում իր գիրկն առել գերությունից նոր միայն ազատված իր ընկերոջը՝ Վանենի իշխանուհու նվիրած այդ ձեռագիրը:

* * *

Այս հեքիաթը այսքանով էլ չի ավարտվում. Հովհաննես Վանականից հետո այդ ձեռագիրն անցնում է ուրիշներին, ապրում թափառականի դարավոր կյանքով, նորից գերվում, նորից ազատվում և ձեռքից-ձեռք անցնելով հասնում մեզ:

Այժմ նա կանգնած է իր նման հազարավոր ձեռագրերի շարքում և ապրում է ընդմիշտ փրկվածի խաղաղ կյանքով, որպեսզի հավերժորեն վառ պահի Վանենի իշխանուհու, Վանական գիտնականի, Խորանաշատի դպրոցի և իրեն գերությունից փրկող ու փայփայող բազմաթիվ հայտնի ու անհայտ հայ գրասերների պայծառ հիշատակը:

Ահա և բոլորը, բոլորն էլ՝ իրական ու պատմական:

Համոզվելու համար կարող եք կարդալ Կիրակոս Գանձակեցու «Հայոց պատմությունը», գնալ Խորանաշատ, առավել հաստատ համոզվելու համար՝ այցելել Մատենադարան: Իսկ այստեղ՝ քանի՜-քանի Հովհաննես Վանականներ, քանի՜-քանի Վանենիներ և քանի՜-քանի տխուր, բայց հերոսական հեքիաթներ, որոնցից էլ հյուսված է մեր ժողովրդի պատմությունը:

Եղել է, եղել է մի հայ գիտնական՝ Հովհաննես Վանական անունով:

Եղել է, եղել է մի դպրոց՝ Խորանաշատ անունով:

Եղել է, եղել է մի իշխանուհի՝ Վանենի անունով:

Եղել են, եղել են օտար նվաճողներ:

Եվ եղել է, կա ու կլինի մի գրասեր ժողովուրդ, որ կոչվում է հայ ժողովուրդ:



# ԾԵՐՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Ներսես պապը իր մանկության ընկեր Սանթրոսից նամակ ստացավ: Սանթրոսը գրում էր, որ թոշակի է անցել, չի աշխատում և ցանկանում է վերջին անգամ Ներսես պապին տեսնել, ով գիտի, ասում է, գուցե էլ իրար չհանդիպեն:

Պապը քիչ մնաց լաց լիներ:

Թոռնիկները մոտեցան նրան.

— Պապի՛կ, ա՛յ պապիկ, ի՞նչ է պատահել:

— Պատահել է՜, պատահե՜լ,— հուզված պատասխանեց պապը:

— Բայց ի՞նչ, ի՞նչ:

— Սանթրոսը պիտի գա, Սանթրո՛սը:

— Սանթրոսն ո՞վ է:

— Ո՞վ է, ո՞վ է: Ծատուրանց Սանթրոսն է, ով է:

Երեք օր անց հեռագիր ստացվեց: Պապն ավելի հուզվեց.

— Վա՛յ, Սանթրո՛ս ջան, ուրեմն գնացքի մե՞ջ ես,— ինքնիրեն խոսեց պապը: Նա ինքնիրեն խոսելու սովորություն ուներ:— Ուրեմն մի ժամից պիտի հանդիպե՞նք...

Ներսես պապը հագնվեց, ձեռնափայտն առավ ձեռքըն ու դուրս եկավ: Ճքճքան ձմեռ էր, գետինը սառած, ձյունն էլ դեռ փաթիլ-փաթիլ գալիս էր:

— Պապի՛կ, դու մենակ չես կարող, կընկնես:

— Խի՜-խի՜-խի՜,— խնդաց պապը:

— Պապի՛կ, թող մենք էլ գանք, փետինը շատ է սառած:

— Ձե՛ռք քաշեք... Ո՛չ, ես ձե՛ր...— պապը կատակով կքեց, խփեց ծնկանը. թոռները փախան, մտան տուն:— Խի՜-խի՜-խի՜...

Տնից դուրս եկավ նրա ծեր կինը:

— Մենակ մի՛ գնա, ա՛յ մարդ: Երեխաներից մեկին հետդ վերցրու:

— Խի՜-խի՜-խի՜: Սո՛ւս արա, որ քեֆս լավ է:

— Բա ո՞նց պիտի ճանաչես:

Պապը բարկացավ.

— Ուրեմն ես իմ ընկերոջը չպիտի՞ ճանաչեմ: Ի՛մ... ի՛մ...— նա արդեն ոտքը շեմքից դուրս էր դնում, սայթաքեց, քիչ մնաց ընկներ:

— Ասում եմ՝ մենակ մի՛ գնա:

Պապը ավելի բարկացավ, ձեռքը թափ տվեց ու ճամփա ընկավ: Ծերուկը, ուրեմն, ինքնիրեն խոսելու սովորություն ուներ: Խոսում էր բարձրաձայն.

— Ասում է՝ ո՞նց պիտի ճանաչես: Ուրեմն ես Սանթրոսին չպիտի ճանաչե՞մ, ուրեմն Սանթրոսը ինձ չպիտի ճանաչի՞... Տո, ես նրա ցա՛վը տանեմ, ես նրան իսկի կմոռանա՞մ, որ հազար տարի էլ անցնի... որ... որ... վա՛յ-վա՛յ,— պապի ոտքը սահեց, հազիվ պահեց իրեն, որ չընկնի:— Էս ի՞նչ կպչելի ձյուն է, գլխի վրա սնկվելու էի:

Մարդիկ ներողամտաբար ժպտալով ճանապարհ էին տալիս, ոմանք փորձում էին օգնել նրան, բայց Ներսես պապը հրաժարվում էր: Եվ հին, քարուքանդ եղած տրակտորի պես փնչալով, առաջ էր գնում ու մեկ էլ՝ թը՛մփ, մեջքի վրա ընկնում էր ձյան վրա: Մարդիկ ուզում էին բարձրացնել նրան, բայց պապը ձեռնափայտով ետ էր հրում նրանց, մի կերպ ոտքի էր ելնում ու շարունակում ճամփան:

— Պահո՛, որ այսպես գնամ՝ իրիկունն էլ կայարան չեմ հասնելու: Վա՜հ, այս ի՞նչ անտեր ձյուն է, դեռ ջրվեժի պես էլ թափվում է:

Ինչքան էլ զգուշորեն էր շարժվում, դարձյալ ոտքը սահում էր, և պապը ձեռնափայտով օդը ծակոտելով դես-դեն էր մեկնում, կարծես խաղում էր. քիչ թռչկոտում էր ու հանկարծ փռվում մեջքի վրա: Հեռու կանգնածները ծիծաղում էին, և պապն ավելի էր կատա-

դում: Ո՛չ թողնում էր, որ օգնեն, ո՛չ էլ ինքն էր կարողանում մենակ գնալ: Ու չարացած պնդում էր, որ ուժեղ է՝ ոչ ոքի օգնության չէր կանչում:

— Հիմա խեղճ Սանթրոսը կայարանում ցրտից սրթսրթում է, ինձ է սպասում: Նա էլ հենց կիմանա, թե ես դիտմամբ չեմ գնացել, կնեղանա: Այսինքն, ինքը հասցեն գիտի, բայց ամոթ բան է, որ չգնամ: Չէ՛... հիմարություն արի, պառավին ականջ չդրի...

Այսպես ինքնիրեն խոսելով գնում էր, երբ նրա դեմ դուրս եկավ մի այլ ծերուկ, որը նույնպես ինքն իր հետ խոսելու սովորություն ուներ: Երկուսն էլ դժգոհ մրթմրթալով իրար ճամփա տվին ու երկուսն էլ ընկան: Ներսես պապն ընկած տեղում ձեռքով ծեծում էր ձյունըն ու ինքնիրեն խոսում.

— Ո՞ւր ես այսքան գալիս, ո՞ւր, ո՞ւր...

— Սա ի՞նչ անտերություն է,— խոսում էր մյուսը:

Ներսես պապը, որ մի քիչ էլ վատ էր լսում, իմացավ, թե իրեն է վերաբերում, բարկացավ.

— Ի՞ ի՞նչ,— հարցրեց նա դեմքը խոժոռելով:

— Ծերության վերջն էլ սա է, ջա՛նըմ,— ինքն իր հետ, առանց Ներսես պապին ուշադրություն դարձնելու, խոսում էր մյուսը:

— Ի՞նչ ասացիր,— որոտաց Ներսես պապը:

Մյուսը վեր կացավ, թափ տվեց վերարկուի ձյունը և քթի տակ խոսելով, գնաց:

— Եթե շտապելիս չլինեի, ես քեզ ցույց կտայի,— գոռում է Ներսես պապը նրա ետևից, բայց շտապում եմ...

Մյուսը բռունցքը սպառնական ճոճելով հեռացավ:

Նորից փռշտալով, հազալով, Ներսես պապն առաջ շարժվեց: Կայարան հասավ ուշացումով, կայարանում մարդ-մուրդ չկար, գնացքը վաղուց եկել էր ու բոլորը ցրվել էին:

Տխուր ետ դարձավ տուն: Տան բակում վազելով նրան ընդառաջ եկան թոռնիկները.

— Սանթրոս պապիկն եկե՛լ է, հրե՛ն տանը նստած:

Ներսես պապը ջահելացած առաջ վազեց: Արցունքները լճացան աչքերին:

— Ո՞ւր է, ո՞ւր է,— գոչելով մտավ տուն, ձեռքերը գրկախառնվելու համար պատրաստ, ու մնաց քարացած:

Նրա առաջ նստած էր այն ծերունին, որի հետ ճամփին, թե ժամանակ ունենար, լավ կռվելու էր:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



# ՀԱՄԼԿԵՄ 16-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՄՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր

Երկու տարի հետո լրանում է Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության 50 տարին: Դա մեծ և հուզիչ իրադարձություն է սովետական երեխաների, լենինյան կոմերիտմիության, մեր ամբողջ երկրի համար:

Սովետական իշխանության արշալույսին ծնվեց պիոներական կազմակերպությունը: Նա ստեղծվեց կոմունիստական կուսակցության կողմից, շրջապատված է հայրենիքի սիրով և հոգատարությամբ: Աճեցե՛ք որպես կոմունիստներ, օգնեցե՛ք հերթափոխությանը: Այս բարի և իմաստուն ուղերձը ուղղեց Վլադիմիր Իլյիչ Լենինը սովետների երկրի ամենափոքր սերնդին:

Ձեր հանդիսավոր խոստման մեջ կան նշանավոր բառեր. «Ջերմորեն սիրել հայրենիքը, ապրել, սովորել և պայքարել այնպես, ինչպես պատգամել է Լենինը, ինչպես սովորեցնում է կոմունիստական կուսակցությունը»:

Պատանի պիոներների բոլոր սերունդները հավատարիմ են եղել այդ երդմանը: Այսօր պիոներական կարմիր դրոշը ձեր ձեռքին է, 70-ական թվականների պիոներնե՛ր:

Մենք՝ ՀամԼԿԵՄ 16-րդ համագումարի պատգամավորներս, կոչ ենք անում երկրի բոլոր պիոներներին՝ ակտիվ պիոներիայի հոբելյանի նախապատրաստությանը: Տոնին նախապատրաստվե՛ք ջերմորեն, էնտուզիազմով: Թող յուրաքանչյուր ջոկատ, յուրաքանչյուր դրուժինա հոբելյանը դիմավորի լավ գործերով, ուսման մեջ, աշխատանքում, սպորտում ձեռք բերած նոր հաջողություններով:

ՊԱՏԱՆԻ՛ ՊԻՈՆԵՐՆԵՐ.

Պիոներական կազմակերպությունը կրում է Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը: Նրա դրոշին կա Լենինի շքանշան: Թանկ գնահատեք պատանի պիոների կոչումը, միշտ և ամենուրեք կատարե՛ք Լենինի պատգամները, ձեր պիոներական օրենքները: Սովորեցե՛ք կոմունիստներից և կոմերիտականներից՝ պայքարել կուսակցության գործի համար, սիրել հայրենիքը:

ՊԱՏԱՆԻ՛ ՊԻՈՆԵՐՆԵՐ.

ՀԻՇԵՑԵ՛Ք, առանց գիտելիքների չկա կոմունիզմ:

Սովորեցե՛ք բարեխղճորեն, սովորելը ձեր գլխավոր գործն է: Աճեցե՛ք որպես հետաքրքրասեր, հասարակական մարդիկ: Օգնեցե՛ք ընկերներին, խստորեն հաշվի նստեք անփույթների, կարգապահությունը խախտողների հետ: Թող դպրոցներում լինեն ավելի շատ պատանի տեխնիկների, գիրքը սիրողների, պատմաբանների, հայրենագետների, երկրաբանների, մաթեմատիկոսների խմբակներ: Երիտասարդ բանվորները, ինժեներները, գիտնականները, ուսանողները կօգնեն ձեզ բազմաթիվ նոր հայտնագործություններ կատարելու:

ՊԱՏԱՆԻ՛ ՊԻՈՆԵՐՆԵՐ.

ՀԻՇԵՑԵ՛Ք, կոմունիզմը կառուցվում է միլիոնների աշխատանքով: Բոլոր հրաշալիքները մեր սովետական հողում ստեղծված են բանվորական ձեռքերով: Պահպանեցե՛ք և բազմապատկե՛ք ժողովրդական հարստությունը, աճեցե՛ք որպես երկրի հոգատար տերեր: Պահպանեցե՛ք հայրենի բնությունը, զարդարե՛ք մեր երկիրը նոր այգիներով, պուրակներով: Թող յուրաքանչյուր դրուժինա և ջոկատ պիոներիայի հոբելյանի առթիվ հայրենիքի համար պատրաստի իր աշխատանքային նվերը: Բարեկամացե՛ք կոմունիստական աշխատանքի բրիգադների և հարվածայինների հետ, նրանցից սովորե՛ք աշխատել լենինաբար:

# «ՀԻԱՆԱԼԻ–ՀԻԱՆԱԼԻ» ՆԵՐՍԻԿԸ...

ՀՈՎ. ՂԱՐԻԿԱՍՅԱՆ

Հիանալի օր էր։ Կեռմաններում թնդում էր մեր առջևից ընթացող պիոներների խմբերգը։ Կապույտ երկինք. աջ ու ձախ տարածված եղյամափայլ, թարմ խոտհարքներ, հնձի սպասող. ոսկուն տվող արտեր, մեղվափեթակներով լի ծաղկահովիտներ ու մանուշակ սարեր։ Բարձրանում ենք Սևանի ուղղությամբ։ Ինչպես պատահում է նման դեպքերում՝ անցան բընությամբ հրապուրվելու լուռ պահերը ու կամաց-կամաց սկսեցինք խոսել դեսից-դենից. Բայց շատախոս հարևանուհիս ոչ ոքի հերթ չի տալիս։ Ուշքն ու միտքը անընդհատ զամբյուղների հետ՝ չլինի՝ թե ընթացքի ժամանակ շուռ գան. մրգերը ճխլվեն ու միաժամանակ մարդուն է գովում, իրեն է գովում և մանավանդ իր տղային. Ներսիկս էսպես. Ներսիկս էնպես, Ներսիկը մի հատ է ողջ Երևանում. հիանալի սովորում է, հիանալի նկարում. հիանալի լսող ու կարգապահ տղա է, ինչպես ասեմ. այնքան «հիանալի-հիանալի» ասաց. որ ես չիմացա, թե ո՞ւր մնացին մեր առջևով ընթացող մեքենաները, ու մենք ճամփից ծռվելով դեպի ո՞ր կողմն ենք գնում։ Ո՛չ ամուսնու խեթ հայացքները. ո՛չ էլ Արտոյի բազմիմաստ «հը, հը»-ները չօգնեցին։ Իմ փոխարեն, ասես. չդիմացավ մեքենան ու պոռթկաց. այսինքն՝ սկսեց ջուրը եռալ։ Կանգ առանք. ի՜նչ տեղ, ի՜նչ գեղեցկություն։ Ես իսկույն մոռացա քիչ առաջվա իմ ծանր վիճակը։ Կանգնած ենք մի քանի ճյուղավորումներ ունեցող գեղեցիկ ու լայն ձորի մեջ. ոլորապըտույտ ճանապարհը տանում է կապույտին տվող հեռաստանը. ձորամիջով, խոխոջալով անցնում է արծաթափայլ գետակը, իսկ մյուս ափին՝ ձորալանջի կանաչների մեջ ասես վարդագույն շուրջառը ուսերին, սուր վեղարը գլխին՝ կանգնած է արևի ճառագայթների տակ պսպղացող հնամենի մի վանք։

Մինչ Արտոն մեքենայի ջուրը փոխելու համար դույլը ձեռքին գետակ կիջներ. հաշվապահ հարևանըս, որ շատ հաշվենկատ մարդ է, եվ կի իմ սիրտը շահելու համար, դարձավ կնոջը. թե՝

— Վարդուհի՛. վատ չի լինի, որ այստեղ նախաճաշենք։

— Հիանալի տեղ է,— ասաց կինը,— որտե՞ղ նստենք. գետափի՞ն։

Արտոն, թե՝

— Բարձրացեք վանքի շո՛ւրջը՝ լավ տեղեր կան։

Քարից-քար թռչելով ու սայթաքելով, անցանք գե-

տակն ու հազիվ էինք նստել վանքի դիմաց. թարմ կանաչին, Արտոն էլ հասավ։

— Վանքն ասես վերանորոգում են,— քիչ հեռվում թափված կիսատաշ քարերն ու պնդացած շաղախի մեջ ցցված բահը նկատելով. ասաց հարևանս։

— Այո՛.— ասաց Արտոն.— պատմական հուշարձանների պահպանության կոմիտեն է վերանորոգողը. Այսօր կիրակի է. վարպետները հանգստանում են. բայց դա համալսարանի ուսանողների համար չի ասված. ա՛յ, տեսնո՞ւմ եք. նրանք են. ձորի խորքում, որտեղ գետը անցնում է մի բնական կամուրջի տակով՝ դեպի վանքը մի նոր ճանապարհ են գցում տուրիստների համար։

— Հիանալի բան են անում,— ասաց հարևանուհիս,— թե չէ իմ նոր կոշիկները կարգին թրջվեցին քարից-քար թռչելիս։

— Ա՜յ թե գումարներ են ծախսվում, հա՛,— մրտազբաղ ասաց հաշվապահ հարևանս։

— Ուսանողները ձրի են աշխատում.— ասաց Արտոն։— Կեցցե՛ն, ամեն ամառ էստեղ ու էնտեղ հուշարձաններ են վերանորոգում, ճամփաներ գցում։ Իսկական հայրենասեր տղաներ են. բայց, տեսե՛ք, որ այնպիսիներն էլ կան, որ փչացնում, կեղտոտում են դրանց շինածը։

— Այդ ապուշներին դատի պիտի տալ. դատի՛,— պոմիդորը կես անելով, կրդովված վրա տվեց հարևանուհիս։



— Է՛, ինչ ասեմ.— շարունակեց Արտոն,— լըսեք. թե սրանից մի երկու օր առաջ ինչ պատահեց։

— Այստե՞ղ։

— Հենց այստեղ։ Ուրեմն. լուսադեմի մոտ է, հենց այսպես. թարմ հաց և էլի բան-ման եմ տանում ճամբար, շտապում եմ, որ նախաճաշին հասցնեմ։ Շտապում եմ. բայց այս կեռմաններում ո՞նց շտապես, երբ լույսն էլ դեռ կարգին չի բացվել, ճանապարհն էլ թաց է։ Գիշերը հորդ անձրև էր եկել ու լուսադեմի քամին էլ որ վրա չի տալիս՝ տունն ու տաք անկողինն ես հիշում։ Այսպես, ականջս գետի խշշոցին ու քամու վայոցին. փջաքաղված քշում եմ ու. հանկարծ, հենց այնտեղ. որտեղ ջուրը եռաց, ականջիս ինչ-որ աղիողորմ ձայներ հասան։ Ի՞նչ կլինի. հը՞, ասում եմ ու մեքենան արգելակում... Ու, հանկարծ՝

— Օգնեցե՛ք, օգնեցե՛ք...

Դուրս թռա խցիկից ու աղամամթան մեջ դեսուդեն եմ նայում։ Բա՞ն կերևա... ու Ն·րից այդ «օգնեցեք», այս անգամ այնքան սրտա·ճմլիկ. որ ինձ թվաց. թե գետում մարդ է խեղդվում։ Նայեցի. աչքս ընկավ վանքի կողմը ու, տեսնեմ. ինչ-որ սև ուրվական վանքի տանիքին թևերն է թափահարում։ Մոտեցա... Մի տաս-տասներեք տարեկան տղա է, կարճ շալվարով. պիոներական փողկապով...

— Հը՞մ,— արհամարհանքով փնչացրեց հարևանուհիս,— չես հասկանում ոնց են այդպիսիներին պիոներ ընդունում։ Ես ի՞նչ ասեմ դրա մորը։

— Ա՜յ տղա. ասում եմ,— շարունակեց Արտոն,— այդ ի՞նչ ես անում էդտեղ։

Իսկ նա լաց լինելով, թե՝

— Քեռի՛ ջան, խնդրում եմ ինձ ցած իջեցնես.

— Այդ ինչպե՞ս ես բարձրացել. որ իջնել չես կարողանում,— վրա տվի ես, չնկատելով. ա՛յ. տեսնում եք. պատի տակ դրված այս նույն ելարանը։

Մի խուցքով՝ ելարանը հենեցի վանքի քիվին ու նա վախից ու ցրտից սրթսրթալով. մի կերպ վայր իջավ։ Նորից դարձա դրան, թե՝ ի՞նչ էր անում այդտեղ, ինչո՞ւ էր բարձրացել։ Չի պատասխանում. մի գլուխ լաց է լինում։ Թաց հագուստը տախտակ է դարձել վրան. կապտել է ոնց որ Պուշկինի ջրահեղձը։ Բաճկոնս հանեցի, գցեցի ուսերին ու նորից եմ հարցնում. թե ինչ գործ ունեիր վանքի տանիքում։ Ինչ պատմի, որ լավ լինի. երկու օր առաջ ճամբարից եկած են լինում վանքը դիտելու՝ սա էլ դիտողների մեջ։ Այս հիմարի մտքով անցնում է վանքի թըմբուկի վրա իր անունը գրել, ոնց որ տեսած կլինեք՝ կավիճով-յուղաներկով. տեղ-տեղ էլ դեռ փորագրում են, այո՛. այո՛. ոնց որ իրենց գերեզմանաքարի վրա։

— Այ դրանց ձեռքը չորանա. հա՛.— վրդովված ասաց հարևանուհիս։— Ես այդպիսի երեխային մի օր էլ չեմ պահի։

— Մեծ լինեն թե փոքր, բռնես ու դրանց երկար ականջները մի լավ ոլորես,— ավելացրեց ամուսինը։

— Դե. ո՞նց ոլորեի.— շարունակեց Արտոն.— տեսնում եմ, ողջ գիշերը մեն-մենակ մնացել է տանիքում, անձրևի տակ. ու վրան էլ շունչ չկա։ Հա. հարցնում եմ, հետո՞. նա. թե՝ ճամբարի վերանորոգումից մի կես բանկա կապույտ ներկ էր մնացել խոհանոցի անկյունում ընկած. վերցնում է այդ ներկը ու երեկոյան գալիս այստեղ։ Դե՛, ճամբարը այստեղից շատ-շատ մի երկու կիլոմետր լինի։ Գալիս է մի քարի ետևում թաքնված սպասում. մինչև որ վարպետները գործը վերջացնելով հեռանում են։ Չի նըկատում, որ բանվորներից մեկը դեռ չի գնացել և բահ ու բրիչն է հավաքում վանքի գավթում։ Ուրեմն. սա հազիվ է հասցնում իր անվան կեսը կեսմետրա-

նոց տառերով գրել, երբ ինչ-որ թրմփոց է լսում. կըռանում է ցած. ինչ տեսնի՝ բանվորը ելարանը իջեցրել է ու հեռացել: Այստեղ ինչպես ասում են՝ սա իր գլուխը կորցնում է, դես է ընկնում. դեն է ընկնում, իջնել չի կարողանում: Ու ողջ գիշերը. թակարդն ընկած մկան պես մնում է վանքի թեք տանիքին, անձրևի ու քամու ոռնոցի տակ:

Խղճացի, լավ. ասացի՝ նստիր. գնանք: Այսպես կուչ է եկել խցիկում ու խեղճ-խեղճ նայում է ինձ: Զգում եմ. որ ինչ-որ բան է ուզում ասել: Հանկարծ, գրպանից հանում է մի հիանալի. ոնց որ ասում են՝ տասբացվանի դանակ, ու՝

— Քեռի՛ ջան.— ասում է,— վերցրու քե՛զ:

— Ինչո՞ւ,— հարցնում եմ ես զարմացած:

— Ինձնից հիշատակ,— ասում է խեղճ ձայնով:— Դե. որ մի քիչ էլ ուշանայինք,— ասում է,— վախից սիրտս պայթելու էր:

Դանակը վերցրեցի. հասանք ճամբար, խղճացի տղային ու չասացի, թե որտեղից եմ բերում ու ինչ գործի վրա եմ բռնել: Բայց այս երկու օր է մի միտք ինձ հանգիստ չի տալիս. ի՞նչ հիշատակ. ասում եմ ինքս ինձ. նա շատ կուզենար. որ իր մասին երբեք էլ չհիշեմ ու, ահա, դանակն է նվիրել: Չէ. ասում եմ. այդ տղան պարզապես իմ սիրտը շահելու համար տվեց այդ դանակն ինձ. չէ՞, հենց տեղ հասնենք՝ վերադարձնեմ ու եմ... Ահա ա՛յս դանակն է:

Արտոն գրպանից դուրս քաշեց գդալ, պատառաքաղ. խցանահան, մկրատ և այլ սայրեր ունեցող հիանալի մի դանակ:

Բայց հենց ա՛յդ տեսավ. հանկարծ հաշվապահ հարևանս. թե՝

— Տեսնեմ

Վերցրեց ու, ձեռքի մեջ շուռումուռ տալուց հետո, միամիտ-միամիտ

— Սա ի՛մ դանակն է... բա, իհա՛րկե. սա էլ անունս եմ փորել վրան և 1927: Նայի՛ր, Վարդուհի՛:

Բայց վա՜յ այն նայելուն, որ հարևանուհիս նայեց: Շփոթվեց. կարմրեց. գունատվեց...

Ուրեմն, այդ «անպետք արարածը» նրա «հիանալի» Ներսիկն էր եղել... Ծանր, շա՛տ ծանր վիճակ էր բոլորիս համար:

ԱԿ. ՇԱՀԻՆ ՍԻՐԱՎՅԱՆ







## ՈԵՏԻՆԵ ՃՈՒՏԻԿՆԵՐ

Եռացող հեյզերներում, Մեռյալ ծովի ցարը ջրերում, մթին քարայրներում թե շիկացած ավազուտներում. ամենուրեք ապրում են զանազան բացիլներ. որոնք կարողանում են ընտելանալ ամենադժնդակ պայմաններին անգամ: Որոշ միկրոօրգանիզմներ ապրում ու բազմանում են թթուների լուծույթներում. նավթի կամ բենզինի մեջ, իսկ պարաֆինի մոմը կամ վազելինը դրանց սիրած բնակավայրն է: Բայց կարևորն այն է. որ բացիլները. սնվելով նավթով կամ կերոսինով, արտադրում են պարզագույն սպիտակուցներ՝ պրոտեիններ, որոնք կարող են կեր լինել հավերի. խոզերի և կովերի համար: Միկրոկենսաբանական առաջին գործարանները արդեն աշխատում են: Բացիլներով բնակեցնում են ջրի. նավթի ու հանքային աղերի խառնուրդը, և այդ «խմորի» 100 տոննայից բացիլները «թխում են» մեկ տոննա հիանալի սպիտակուց: Բացիլները կարող են սպիտակուցներ շինել կաուչուկի և ռետինի թափոններից, նույնիսկ՝ հին կրկնակոշիկներից ու ավտոդողերից:

Այժմ կերոսինի ու ռետինի սպիտակուցներով կերակրում են մկների մի քանի սերունդներ ու հավի ճտեր. հետևում. թե ինչպես են իրենց զգում այդ անսովոր կերով սնվող կենդանիները:

## ԹՈՒՆԱՎՈՐ ԾԱՌԸ

Բուսական աշխարհի հետաքրքրական երևույթներից է թունավոր ծառը: Նա աճում է Գվինեայում, Պուերտո-Ռիկոյում, Մեքսիկայում, Պանամայի ջրանցքի ափերին և այլ վայրերում:

Սովորաբար թունավոր ծառը աճում է մեկական հատ կամ մի քանի հատ միասին: Երբեմն էլ այդ ծառի խիտ մացառուտներ են պատահում:

Բուսաբանության մեջ այդ ծառը կոչվում է «հիպոմանե մանցինելա»: Այդ անսովոր ծառի հատկությունները նման են Պուշկինի «Անչար» ոտանավորում նկարագրված ծառի հատկություններին:

Այդ ծառի նշանման պտուղները, ինչպես նաև տերևների, կեղևի և բնի հյութը թունավոր են: Առանց հատուկ հագուստի՝ ռեզինապատ ձեռնոցների և դիմակի վտանգավոր է նույնիսկ մոտենալ այդ ծառին: Թունավոր ծառից կաթած անձրևի կաթիլներն ընկնելով մարմնի վրա, առաջացնում են վերքեր, որոնք երկար ժամանակ չեն լավանում: Այս ծառի բարձրությունը հասնում է 3—15 մետրի: Այն աճում է ծովափերի և գետափերի ավազոտ հողում: Մանցինելայի փայտը օգտագործվում է թանկարժեք կահույք պատրաստելու համար: Սակայն այդ ծառի փայտի մշակումը վտանգավոր է և կապված է լուրջ դժվարությունների հետ: Մինչև ծառի կտրելը ծառի շուրջը բռնկում են մեծ խարույկ, որը այրում է նրա տերևները, կեղևը և չորացնում է բունը: Ծառը սղոցելը նույնպես պահանջում է որոշակի զգուշություն, որովհետև նրա դեռևս խոնավ թեփը վտանգավոր է մաշկի համար: Հիպոմանե մանցինելայի փայտի լիակատար չորացումից հետո միայն, սկսում են մշակել:

*ԹԱԴԵՎՈՍ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*



## ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՍԼԱՆՈՒՄ Է ՕԴՈՎ

Օդով, առանց լարերի էլեկտրականություն հաղորդել—այդ միտքը վաղուց է բորբոքել ֆանտաստ գրողների երևակայությունը: Բայց, ավա՜ղ, դա երազանքից այն կողմ չէր անցնում: Միայն վերջերս սովետական գիտնական Պ. Կապիցան ստեղծեց մագնետրոն-սարքեր և պլանոտրոններ, որոնք էլեկտրական մեծ հզորությունը վերափոխում են բարձր հաճախականության հոսանքի: Այդպիսի հոսանքով, որն անտեսանելի ճառագայթների նման անցնում է առանց լարերի, հնարավոր կլինի սնել հեռվում գտնվող պլանային մեքենաներ: Պատկերացրեք, որ լայնարձակ դաշտերի միջև կառուցված է ատոմային էլեկտրակայան: Դրա վրա կանգնած է ցանցկեն աշտարակը: Աշտարակից դեպի հեռուներն են սլանում անտեսանելի ճառագայթներ, որոնք էներգիա են տալիս հարյուրավոր ու հազարավոր տրակտորների, կոմբայնների: Աշտարակի ներսում կառավարման կետն է: Այստեղից հեռացույցի և հեռավարման միջոցով, տասնյակ կիլոմետրեր հեռվից, մի քանի մարդ բանեցնում են մեքենաները: Մոտիկ ապագայում, հավանաբար, այսպիսին կդառնա տրակտորիստի համեստ մասնագիտությունը:



## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ԻՆՔՆԱԹՄՐԵՑՈՒՄԸ

Բնագետները վաղուց նկատել են, որ կենդանիները, ինչ-որ տարօրինակ սովորությամբ, երբեմն իրենց գցում են ինքնամոռաց վիճակի մեջ, որը, չգիտես, խա՞ղ է, թե՞ անհրաժեշտություն:

Որոշ թռչուններ՝ կաչաղակը, սարյակը, հնդկահավը, թութակը և այլն, մրջնանոց նկատելիս գալիս նստում են դրա վրա, թևերը բացում, պոչը սեղմում փորի տակ և այդպես քարացած մնում, մինչև որ մրջյունները լցվեն վրան ու կծոտեն: Մի կես ժամ այդ դիրքով՝ փետուրները ցցած, ապշած հայացքով, թռչունը նայում է մի կետի և լորձունքը վազում է բերանից: Ապա կտցում ուտում է մրջյուններին կամ թափահարելով ազատվում դրանցից:

Ավստրալիացի թռչնաբան Ա. Չիզհոլմը հավաքել և ուսումնասիրել է բազմաթիվ նման փաստեր ու տվել մի քանի հնարավոր բացատրություններ: Այս-

պես, կամ մրջնաթթվի միջոցով ոչնչացնում են իրենց վրա եղած պարազիտներին, կամ դրանով ընտելանում են մրջյունների խայթոցներին ընդհանրապես, այսինքն՝ ցավազրկվում, կամ էլ՝ ինչ-որ հաճույքի համար են ընդունում այդ «մրջնալոգանքը»:

«Մրջնամոլությունը» շատ է տարածված թռչունների մեջ: Մրջնաթթվի բացակայության դեպքում թռչուններն օգտագործում են այլ միջոցներ. թթթուրի սուր հոտով արտաթորանքը, փայտի ուտիճներին, մրգերի թթվաշ հյութը, նավթային, տաք մոխիր, ծուխ, ծխախոտի մնացորդ:

Ա. Չիգխոն մը պատմում է, որ ինքն ուներ մի ծեռնասուն կաչաղակ: Հենց որ ինքն սկսում էր ծխել, կաչաղակը թռչում բերում էր մի մրջյուն, թաթախում հանգած ծխամորճի մոխրի մեջ և քսում փետուրներին: Դրանից ինչ-որ հաճույք էր ստանում: Մի ուրիշ դեպք. ընկած ծառաբունն այրվում էր՝ դանդաղ ծխալով: Սարյակները գալիս նստում էին ծխի մեջ, թևերը բացում, բայց թունավորվելով թռչում էին մի կողմ, ապա, սթափվելով, նորից էին գալիս նույնն անելու:

Կատուները սիրում են վալերիանի հոտը, ուտում են խոտը և հաճույքով թավալվում գետնին, իսկ մրկների մի տեսակ կա, որ շատ է սիրում ծխախոտ ծամել և ընկնել արբեցման մեջ: Փղերն արտակարգ զգայուն են անանուխի հոտի նկատմամբ: Փոքրի համար անանուխի կոնֆետը մոտեցրել են նրա կնճիթին, և հսկան հաճույքից հալվելով, գլխապտույտ է ստացել ու հենվել վանդակաճողին:

Հարավային Աֆրիկայում տարին մեկ անգամ ջունգլիի բնակիչները մասնակցում են մի ընդհանուր «գինարբուքի»: Դա լինում է մարուլայի պտղի հասունության ժամանակ: Բոլոր կենդանիները՝ ծտից մինչև փիղը ուտում են այդ պտուղը, որն սպիրտ է պարունակում, հարբում են և սկսում խենթություններ անել: Փիղը պարում է մի ոտքին կանգնած, կապիկը ցատկում է ծառերի գլխապտույտ կատարներից, աղվեսները հաճույքից կաղկանձում են, և ոչ ոք իր թշնամուց չի վախենում:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐ



## ՄԻ ՆՈՐ ՄՈՑԱՐՏ՝ ԱՎՈ ԳՈՒՅՈՒՄՋՅԱՆ»



Համերգը տեղի էր ունենալու Բեյրութի Մխիթարյան միջնակարգ վարժարանի սրահում: Ամբողջ ճանապարհին, բազմաթիվ խաչաձև հարցերով, ես ուզում էի իմանալ, թե ով էր համերգ տվողը: Ինձ հրավիրողը միայն խորհրդավոր ժպտում էր և ասում.

— Քիչ մըն ալ համբերեցէ՛ք, քիչ ետք կտեսնեք...

Երբ տեղ հասանք, սրահը արդեն լեփ-լեցուն էր հայ և օտարազգի հանդիսականներով: Իմ ծանոթը ականջիս անընդհատ շշնջում էր զանազան անուններ, մատնանշելով ներկաներին.

— Սա «Զարթօնք» թերթի ներկայացուցիչն է, սա «Այգ»-ինը, այս մեկը ֆրանսերեն «Լը սոար» թերթին կողմեն եկած է, այսինչը Լիբանանի հեռատեսիլին ներկայացուցիչն է:— Ապա թվում էր, թե ո՛ր դեսպանատների աշխատակիցներն են ներկա: Մի բան, որ ենթադրել էր տալիս, թե համերգ տվողը հայտնի երաժիշտ է:

Հանկարծ ծայր առավ որոտընդոստ մի ծափահարություն և իմ ծանոթը ոտքի կանգնելով՝ ասաց.

— Եկա՛վ: Տեսէ՛ք:

Բեմի վրա հայտնվել էր փոքրիկ, հազիվ վեց տարեկան մի տղա՝ թավշյա սև կարճ տաբատով, սպիտակ վերնաշապիկով և թիթեռնաձև սև փողկապով:




— Սա՞ է համերգ տվողը,— հարցրեցի մի տեսակ հուսախաբ, թերահավատ:

— Նույն ինքն՝ Ավո Գույումջյանը,— ձայնի մեջ հաղթական մի շեշտ, ասաց իմ ծանոթը:

Փոքրիկը գլուխ տվեց հանդիսականներին, մի պահ սպասեց, որ դադարեն ծափահարությունները և մոտեցավ դաշնամուրին: Նա նվագում էր կանգնած, որովհետև ոտքերը չէին հասնի դաշնամուրի ոտնակներին: Նվագում էր ինքնամոռաց, ներշնչանքով: Մատները վարժ սահում էին ստեղների վրայով, և այդ մեծ դաշնամուրը հլու-հնազանդ ենթարկվում էր այդ փոքրիկ տղային: Ոչ մեկ սխալ հնչյուն: Իրոք հրաշք էր...

Այդ օրը Ավոն նվագեց մեծ մասամբ իր հորինած գործերը, ընդ որում՝ Ձմեռ պապի գալուստը ողջունող աշխույժ մի քայլերգ, կատուների և մկների կռվի մասին պատմող զվարթ մի եղանակ, ապա մանկական անմիջականությամբ, ուրախ հնչերանգներով թաթավուն այս գործերի կողքին, դարձյալ իր հորինած, բայց այս անգամ արդեն տագնապալի հնչյուններով առլեցուն «Փոթորիկ ծովում» ստեղծագործությունը և Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Քենեդիի սպանությունից ազդված մի մահերգ: Զարմանալի տպավորություն թողեց այս մահերգը ներկաների վրա. նվագում էր փոքրիկ երաժիշտը, և հանդիսականները իրենց զգում էին համրաքայլ հառաջացող սգակիրների թափորում:

Երբ համերգն ավարտվեց չլռող ծափահարությունների միջից լսվում էին հայերեն, ֆրանսերեն, արաբերեն, անգլերեն բացականչություններ.

— Կեցցե՛ս, Ավո՛, բռա՛վո, Ավո՛...

Իսկ փոքրիկ Ավոն, չսպասելով, որ դադարեն ծափահարությունները, ժամանակ չտալով, որ լուսանկարիչները ինչպես հարկն է նկարեն իրեն, թեթև վազելով հեռացավ բեմից և փաթաթվեց իրեն ընդառաջ գնացող մի կնոջ, որը մայրն էր:

Իմ ծանոթը, օգտվելով առիթից, ինձ ծանոթացրեց Ավոյի և նրա ծնողների հետ: Փոքրիկը, որ մինչ այդ անտարբեր էր իրեն շրջապատող թղթակիցների նկատմամբ, թողնելով, որ մայրը պատասխանի նրանց հարցերին, հենց իմացավ, որ Երևանից եմ, աշխուժացավ, բոցկլտացին աչքերը, և հարցրեց.

— Արամ Խաչատրյանը կճանաչե՞ք:

— Իսկ դո՞ւ,— հարցին հարցով պատասխանեցի ես:

— Շատ կսիրեմ Խաչատրյանը,— մանկական անմիջականությամբ ասաց նա,— շատ կսիրեմ անոր «Սուրերով պարը», «Տոկատան»:

— Կնվագե Խաչատրյանի այս երկու գործերն ալ,— ավելացրեց մայրը:— Մեր բոլորիս երազն է, որ ան ուսումը շարունակե Խաչատրյանի մոտ: Չենք ուզեր, որ օտար միջավայրը խլե մեզմե մեր պզտիկը:

Դա 1966 թվականի դեկտեմբերին էր:

Այդ օրվանից Ավո Գույումջյանը դարձավ սփյուռքի իմ փոքրիկ բարեկամներից մեկը, որի քայլերին հեռվից հետևում եմ, որի հաջողությունների և հառաջադիմությունների մասին կարդալով՝ սրտանց ուրախանում:

Իսկ Ավոն ուրախանալու շատ առիթներ է պարգևում իրմով հետաքրքրվողներին: Նրա անունը արդեն հայտնի է ամբողջ Լիբանանում: Ավոն ելույթներ է ունենում հեռուստատեսությամբ, տալիս մենահամերգներ:

Մամուլը շատ բարձր է գնահատել հատկապես նրա վերջին համերգը:

Ֆրանսերեն «Լ՚օրիան» թերթը այս համերգին նվիրված իր ողրվատալից հոդվածը վերնագրել է «Հրաշք երեխա, մի նոր Մոցարտ՝ Ավո Գույումջյան»:

Ավո Գույումջյանն այժմ ինը տարեկան է, հաճախում է Բեյրութի Մխիթարյան հայկական միջնակարգ վարժարանը:

Նա երազում է գալ Երևան, նվագել հայրենիքում, իր հասակակիցների համար, երազում է սովորել Արամ Խաչատրյանի մոտ:

Ցանկանք, որ շուտ իրականանա նրա երազը.

*ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆ*



# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# Ե Տ Չ Ե Ն Դ Ա Ռ Ն Ա

ՄՆԱՑԱԿԱՆ ՉԱՀՐԱԲՅԱՆ

Նովորոսիյսկից Կերչ տանող ճանապարհին արդեն մի քանի օր էր, ինչ տեղից-տեղ էր փոխադրվում մի փոքրիկ ճամբար: Մեծ չէր ճամբարականների թիվը՝ 13 հոգի: Մի քանի վրաններ, բնապարկեր, կաթսաներ, գումարած ուսքով ճանապարհ կտրողներին անհրաժեշտ այլ պարագաներ՝ ահա և նրանց ամբողջ ունեցվածքը:

Նրանց և տեղի հետաքրքրասեր բնակիչների, պատահական անցորդների միջև հաճախ տեղի էր ունենում մոտավորապես այսպիսի խոսակցություն.

Ողջու՜յն, տղանե՛ր:

Ողջո՜ւյն...

Հեռվի՞ց եք գալիս:

Հեռվի՜ց:

Իսկ որտեղի՞ց, եթե, իհարկե, գաղտնիք չէ...

Հայաստանից ենք, Երևանից:

Դեռ երկա՞ր եք քայլելու...

Այնքան, որքան մեր հայրերը...

Չհասկացանք:

— Մենք գնում ենք մեր հայրերի հետքերով: Նրանք այս վայրերով անցել են քառորդ դար առաջ: Նրանք Թամանյան դիվիզիայի մարտիկներ են եղել: Մի խոսքով, նրանք անցել են այս ճանապարհը գինվորական շորերով, և մենք հիմա գնում ենք նրանց հետքերով...

— Պարզ է,— վրա է բերել հարցասեր անցորդը ու այս անգամ կիսակատակ.— Ուրեմն՝ մինչև Բեռլի՞ն:

— Գուշակեցիք,— պատասխանել են պիոներները,— միայն թե այս անգամ մինչև Կերչ ենք գնալու, մնացածը՝ հետո:

Պիոներները, որոնց մի քիչ արդեն գիտեք, սովորում են Երևանի 52-րդ դպրոցում: Նրանք բոլորն էլ «Պատանի արծվիկների կոմունա»-ի անդամներն են: Այս կոմունան ստեղծվեց անցյալ տարի դեկտեմբերին՝ Լենինգրադի «Պատանի ֆրունզեականների» օրինակով: Կոմունայում ընդգրկված են 6—10-րդ դասարանների աշակերտները: Նրանք ունեն իրենց նշանաբանը, իրենց հիմնը:

Ինչպես արդեն իմացաք, նրանք իրենց առաջ խնդիր են դրել՝ գնալ Թամանյան դիվիզիայի հետքերով: Մինչ այդ, բազմաթիվ հանդիպումներ են ունեցել դիվիզիայի հին մարտիկների հետ, ստացել են առաջադրանքներ: Կոմունայի շտաբը երթուղին ճշտելու համար մի քանի անգամ խորհրդակցել է նրանց հետ:

Պատանի արծվիկներն այս տարի շարունակելով իրենց ուղին, հասան մինչև Կերչ:

* * *

Վերադառնալով, Արայիկը, Շուշանիկը, Ռուբիկը, Լեյան, բոլոր կոմունայականները ոգևորված պատմեցին, թե ինչպես ընթացավ արշավը:

Մեր ճանապարհը, ասաց կոմունայի շտաբի պետը՝ դպրոցի ավագ ջոկատավար Արմեն Ստեփանյանը, սկսվեց Նովորոսիյսկից: Այնուհետև մենք եղանք Վերխնի Բակլանսկիյում, Թամանյան ծովախորշում և, իհարկե, Կերչում:

Վերխնի Բակլանսկիում, շարունակում է Շուշանիկը, գյուղի կենտրոնում, Հովհան Ալեքսանյանի հուշարձանն է բարձրանում: Մենք գարնանային թարմ ծաղիկներ դրեցինք հուշարձանի գրանիտե պատվանդանին:

# Կ Զ Ա Ք Ի Ս



Կզաքիս

Այս գազաններին առաջին անգամ ես հանդիպել եմ, երբ 13 տարեկան էի: «Դոչ եղա» անվանի որսորդներին, հետները որսի գնացի Հաղարծնի կողմը: Խոր ձյուն էր եկել, բայց մենք ցուրտ չէինք զգում, որովհետև գտել էինք թանկագին մուշտակը հագին այն կենդանու հետքը, որին որսալու տենչով բռնված գյուղից դուրս էինք եկել լուսադեմից էլ առաջ.

Հաղարծին տանող նեղ ճամփան շարունակ ձգվում էր անտառների միջով: Մի տեղ մեր խմբի ղեկավար Շաքարը կանգ առավ և ցույց տվեց կզաքի-

# ԿԵՍ ՃԱՆԱՊԱՐՀԻՑ

Նկ. Ալ. Գրիգորյանի

... Գյուղից չի երևում Դոլգայա բարձունքը: Գյուղից չի երևում նաև այն հակատանկային հրականատը, որն իր կրծքով փակեց Հունան Ավետիսյանը:

Դոլգայա բարձունքը մառախուղով էր պատած: Ցուրտ էր: Երկու քայլի վրա ոչինչ չէր երևում: Խումբը դանդաղ էր շարժվում՝ դժվար էր կողմնորոշվելը: Մի քանի ժամ անց, երևաց մի ժամանակ կրակ ու բոց, շիկացած կապար նետող բետոնե ամրությունը:

Այնքան խեղճ էր երևում այդ մի բուռ բետոնե կառուցվածքը բարձունքի լանջին, այնքան թույլ ու փոքր... Այստեղ մի ժամանակ մարտեր են մղվել: Համոզվելու համար պետք է պարզապես խոտերի միջից, հողի ու քարերի ճեղքերի միջից հանել դատարկ պարկուճներ, ծռմռված, այլանդակված կապարե գնդիկներ: Հեռացիր մի տաս, քսան, հարյուր քայլ՝ շոշափիր ձեռքերով, աչքերդ փակ, ու կզգաս մետաղի հպումը մատներիդ, որից մարմինդ կփշաքաղվի, որից մի անասելի դող կլցվի ամբողջ էությունդ:

... Այստեղ կռիվ է մղվել, այստեղ սպանել են երակները, այստեղ մի երիտասարդ նետվել է կրակի երախը, որ մյուսները ապրեն, որ մյուսները կարողանան իրականացնել իրենց, նաև ի՛ր երազները:

— Ամեն ինչ մի տեսակ անիրական էր թվում,— պատմում էին Ռուբիկը, Օլգան, Սվետան,— Կերչի քարայրներում մենք տեսանք հատակով մեկ այս ու այն կողմ ցրված, պայթած, այլանդակված ականներ:

Քարայրներից մենք մեզ հետ բերեցինք բազմաթիվ իրեր, որոնցով համալրեցինք մեր թանգարանի ցուցանմուշները:

Դրանք մետաղի տձև կտորներ են՝ դժվար է այժմ գուշակել, թե ինչ կենքից են արձակվել: Դրանց մեջ մետաղյա սաղավարտներ կան՝ տասնյակ տեղերից խոցոտված փամփուշտներով, քարերի հալված կտորներ, որ չեն դիմացել պայթյունի ջերմությանը:

Դպրոցում բազմաթիվ լուսանկարներ, պատի թերթեր պատմում են արշավի մասին, իսկ թանգարանը միշտ էլ մարդաշատ է լինում:

Կոմունյականները որոշել են անպայման շարունակել արշավը, անպայման լինի դիվիզիայի անցած մյուս քաղաքներում ու գյուղերում: Եվ նրանք կիրականացնեն իրենց ցանկությունը, իսկ չէ, որ նրանց պատանի արծվիկներ են կոչում, նրանք համառ են և կես ճանապարհից ետ չեն դառնա:



## Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը

սի հետքը, որ լանջից ցած էր իջել, կտրել-անցել էր ճամփան ու անհետացել ներքևի զառիթափում:

— Հետևիցս եկեք,— մեզ ուրախ աչքով արավ որսկան Շաքարը ու հետքով ցած իջավ:

Թեև հոգնել էինք, բայց անմիջապես աշխուժացանք, թև առանք և ձյան մեջ խրվելով, թափթփված ճյուղերը փշրելով, առաջ գնացինք: Ի՞նչ հետք էր դա, որ այնպես ոգեշնչեց մեզ: Հասարակ բան: Ոնց որ կատվի հետք, միայն այն տարբերությամբ, որ սա ոտքերը զույգ-զույգ էր դրել: Երբ իջանք ձորը և նայեցինք մյուս լանջը, տեսանք այնտեղ, ձյան համատարած ճերմակի վրա, գեղեցիկ մի ժանյակ է ձգվում ոլոր-մոլոր:

Գնում ենք հևիհև, գոլորշի է բարձրանում մեր մորթե փափախների եզրերից, քրտինքը դուրս է տըվել մեր թիկունքներից, բայց կանգ չենք առնում, քանի որ կատվի չափ այդ կենդանին այն ժամանակ մի արջի արժեք ուներ:



Քարակզաքիս

Հետքն անցավ լեռան հյուսիսային լանջը, բայց Շաքար ամին մեզ հրահանգեց կարճ իջնել ձորի մյուս կողմը՝ Արեգունի լանջը։

— Դա մեղրի է ման գալիս. գնացել է Կաղնուտ,— իր միտքը բացատրեց Շաքարը։ Այլևս հարցուփորձն ավելորդ էր։ Մենք դեռ երեխա հասակից գիտեինք, որ վայրի մեղուները բույն են դնում լեռան արևահայաց լանջերին, քամիներից պաշտպանված որևէ ձորակում, փուչ կաղնի ծառի մեջ։ Եվ իրոք, Կաղնուտում նորից գտանք կզաքիսի հետքը։ Այդ ժամանակ ծեր որսկանը ինձ մի թեթև «ուտեցրեց».

— Գիրք չի է՛, որ առանց բաց անելու կարդաս. էստեղ փորձ է հարկավոր, ղադեն ջան...

Ծիծաղեցին. ինձ՝ «ուսումնականիս» քրտնեցրին ու առաջ անցան։

Վերջապես մի խոշոր կաղնու տակ հետքը կըտրվեց։ Վերևում մոմոտ մի փչակ կար։ Մեկն իր բլուզը փաթաթեց ու խոթեց այդ փչակը, մյուսը գոտուց հանեց կացինն ու սկսեց ծառը կտրել։ Շուռ եկավ ծառը, կիսից ջարդվեց, մեղրահացերն ու չեչը ցրիվ եկան ձյան վրա, ու շագանակագույն փափուկ մազով մի կենդանի փախավ ծառը բարձրացավ, այնտեղից էլ ցատկեց հաջորդ ծառի վրա և մինչ մտածում էր, թե ոնց փրկվի, որոտացին մեր հրացանները և կզաքիսը փափուկ ու անձայն ցած ընկավ... Վազեցի վերցրի ու կարծես աշխարհքն ինձ տվին, այնքան մեծ էր ուրախությունս։

— Համա անիրավը կերել է, հա՜...

Իրոք գազանիկը վայրի մեղրից լավ տոզել էր, բայց այդ օրհնված միջատներն այնքան մեղր էին պատրաստել, որ ահագին արջն էլ չէր կարող լրիվ ուտել, ուր մնաց կատվից փոքր մի կենդանի։

Հաց հանեցինք, հետը մի կուշտ մեղր կերանք և երբ հասակավորները ծխում էին ու կարծիքներ հայտնում, թե Դիլիջանում ինչ գին կտան իրենց որսին, ես շուռումուռ էի տալիս ու կենդանուն զննում ամեն կողմից։ Նայում էի բաց ճանկերին, վզի տակի պայտաձև ճերմակին (որի համար նրան անվանում են նաև ճերմակալանջ կզաքիս), շոյում էի փարթամ պոչը, փորի քնքուշ մազը հպում էի իմ կոշտ դեմքին ու մտածում, թե տեսնես քաղաքում ապրող էն ո՞ր բախտավոր հուրի-փերին է վզովը գցելու այդ սքանչելի մորթին։

Այդ օրը մի կզաքիս էլ հետապնդեցինք (իհարկե, ոտքով)։ Գիշերը բարձրացել էր մի փուչ հաճարենի, բնում խեղդել անմեղ քընած սկյուռին, կեսը կտրել էր ու շարունակել իր ճամփան։ Լուսադեմին այդ կզաքիսը հասել էր Գառնաքարի ժայռերին ու մտել նրա անթիվ ճեղքերից մեկը։ Այդպես է կզաքիսի այն տեսակը, որ ապրում է մեր հանրապետությունում, ուր էլ որսի գնալու լինի, նրա բնակության հիմնական վայրը ժայռն է։ Այդ պատճառով էլ քարակզաքիս է կոչվում։ Կա նաև անտառային կզաքիս։ Սա ավելի թավամազ է և ավելի թանկարժեք, և ապրում է Հյուսիսի անտառներում։ Հնում, 2—3 հազար տարի առաջ, Սևանի ավազանի երբեմնի անտառներում ապրում էր կզաքիսի այդ տեսակը ևս, բայց անտառները վերանալու հետ ինքն էլ վերացավ (այդ կենդանու ոսկորները մեր հնագետները հայտնաբերել են Սևանի ափի նախնադարյան դամբարանները պեղելիս)։

Քարակզաքիսի արտաքինը տեսանք, տեսանք նաև վարքը՝ գիշերը կեր է փնտրում մինչև լույս՝ մեղր, սկյուռ։ Հաճույքով խեղդում է նաև մկնակերպ կըրծողներին, թռչուններին, կողոպտում է նրանց ձվերը։ Համարձակ է ու հանդուգն, այնքան, որ երբեմն գիշերը մտնում է գյուղերը։ Մի տարի մտել էր Լուսակերտի իմ այգին և ցանկապատի ներսում խեղդել հավերին։ Առհասարակ շատ ճարպիկ, ճկուն և շատ արյունարբու գազանիկ է, ուժը պատե՞ց՝ խեղդում է ով պատահի՝ թե՛ քաղցած, թե՛ կուշտ ժամանակ։ Այդ դեպքում էլ ինչո՞ւ չենք ոչնչացնում, երկրի երեսից վերացնում այդ վնասակար կենդանուն.— կհարցնի ընթերցողը։ Որովհետև իր թանկագին մորթով նա լիուլի ծածկում է իր տված վնասը։

Քարակզաքիսի զուգավորումը տեղի է ունենում ամառվա կեսերին, որից մոտ 8 ամիս հետո՝ հաջորդ տարվա ապրիլի վերջերին ծնվում են ձագերը՝ 3—6 հատ, որոնք սկզբում կույր են լինում, բայց աճում են այնքան արագ, որ հունիսին արդեն մանր կողոպուտներ են անում։

Հաջորդ անգամ կծանոթանանք կզաքիսին ցեղակից աքիսին և խայտաքիսին։

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

# ՋՐԻ ԵՐԳԸ

*ԹԱԹՈՒԼ ԲՈԼՈՐՋՅԱՆ*

Ոչ մի սահման չեմ ճանաչում,
Ճամփաս ուր էլ տանի,
Մի տեղ հանգիստ կարկաչում եմ,
Մի տեղ դիպչում քարին:
Մեկ էլ տեսար ձորն եմ թափվում
Եվ իջնում եմ խորը,
Չմփոցով ես հիշում եմ
Իմ ակունքն ու մորը:
Ու երբ հետո ես անցնում եմ
Մութ քարայրի միջով,
Լռությունը ինձ է փարվում,
Մամուռներով, խիճով:
Դուրս եմ գալիս արդեն հոգնած
Ու մարգերն եմ վազում,

Եթե փոշուց կուրացել են,
Ես աչքերն եմ բացում:
Ինձ գարնանը շատ են տանջում,
Քաշում աջ ու ձախից,
Երբ ծառերը բողբոջում են,
Արթնանում են քնից:
Երբ թփերը չորանում են,
Ծաղիկները խամրում,
Մարդիկ շտապ ճամփաս թեքում,
Նրանց կողմն են տանում:
Դե, ամռանը շոգ է լինում,
Լողանում են իմ մեջ,
Ափից ափ են ինձ փախցնում,

Ե՛վ աղմուկներ, և՛ վեճ:
Աշնանը ինձ մոռանում են,
Քչքչում եմ մենակ,
Վրաս իջնող տերևներին
Դառնում եմ ճոճանակ:
Ձմեռ եկավ՝ ես քնում եմ,
Առած սառցե վերմակ,
Իմ վրայով սլանում է
Հազար ու մի սահնակ:
Ո՛չ մի սահման չեմ ճանաչում,
Ու չեմ հանգստանում,
Բոլոր երգերն առած վերջում,
Ծովերին եմ տանում:

---

## ՊԱՏԱՆԻ ԴԵՂԱԳՈՐԾՆԵՐԻՆ...

*Մեր երկիրը հարուստ է վայրի շատ դեղաբույսերով: Դեղերի մեծ մասը, որ թողարկում է ներկայիս բժշկական արդյունաբերությունը, պատրաստվում են բուսական հումույթից: Դրանք հանդիսանում են շատ արդյունավետ դեղամիջոցներ: Բայց այդ դեղաբույսերից շատ քիչ է մթերվում:*

*Հանրապետական պատանի բնասերների կայանը և «Պիոներ» ամսագրի խմբագրությունը այսօրվանից կոչ են անում Հայաստանի բոլոր դպրոցականներին, ամառային արձակուրդների, դպրոցական արշավների ժամանակ, ճամբարներում, քաղաքներում և գյուղերում, ամենուր և միշտ ուսումնասիրեք Հայրենի բնությունը, փնտրեք ու գտեք շատ կարևոր և օգտակար դեղաբույսերը: Եվ եթե կգտնեք, հավաքեցեք ու հանձնեք մոտակա գյուղական խանութներին: Դժվարությունների հանդիպելու դեպքում կարող եք տանել պատանի բնասերների կայան: Սպասում ենք ձեր արձագանքներին:*

*Ստորև թվարկվում են այն դեղաբույսերը, որոնք տարածված են մեր Հանրապետության անտառներում, մարգագետիններում և որոնք պետք է հավաքվեն ու մթերման հանձնվեն համապատասխան կազմակերպություններին:*

### ՄԱՍՐԵՆԻ



Աճում է մարգագետիններում, անտառի բացատներում և թփուտների մեջ: Ծաղկում է մայիսին, հունիսին, հուլիսին՝ վարդագույն, կարմիր, սպիտակ և դեղին հոտավետ ծաղիկներով: Հասունանում է օգոստոսին, սեպտեմբերին: Հավաքել կարելի է մինչև սառնամանիքները, որպեսզի լրիվ պահպանվեն նրա մեջ վիտամինները: Մաքուր հավաքված հատապտուղները չորացնում են, նրանք ունեն մուգ կարմիր գույն:

### ԱՆԱՆՈՒԽ (ԴԱՂՁ)

Հանդիպում է անտառի բացատներում, թփուտների մեջ և լեռնային հարթություններում: Նրա կարմիր հատապտուղները հասնում են սեպտեմբերին, հոկտեմբերին և մնում են թփին մինչև ուշ աշուն: Լավ է հավաքել այն ժամանակ, երբ մի փոքր ցուրտը տալիս է:



## ԴԵՂԱՏՆԱՅԻՆ ԵՐԻՑՈՒԿ

Սա տարբերվում է մյուս երիցուկներից նրանով, որ սրա ծաղկի դեղին միջուկը դուրս է ընկած: Ունի սուր, դուրեկան հոտ: Ծաղկում է մայիսին: Աճում է դաշտերում, մարգագետիններում, ճանապարհներին, այգիներում: Ծաղիկները հավաքում են չոր եղանակին: Պետք է չորացնել այնպես, որ շատ չչորանա: Լավ չչորացածն ունենում է տհաճ թըթու հոտ և իր բնական գույնը կորցնում է:



## ԱՆԹԱՌԱՄ



Շատ արևոտ ու տաք, ավազային հողերում է աճում անթառամը: Աչքի է ընկնում իր զամբյուղանման, դեղին ծաղիկներով: Ծաղկում է ամբողջ ամառը, սկսած հունիսից: Նրա ծաղիկները օգտագործվում են որպես դեղանյութ: Կտրում են ծաղիկները, 1—2 սմ ցողունի հետ միասին և չորացնում, այն ժամանակ, երբ զամբյուղիկները դեռ լրիվ չեն կախվել: Չորացնելուց հետո էլ դեղին գույնը պահպանվում է:

## ԿԱՏՎԱԽՈՏԻ ԱՐՄԱՏԸ (վալերիանի)



Աճում է խոնավ տեղերում, մարգագետիններում, ճահիճներում, գետի եզրերին: Ծաղկում է մայիս-հուլիսին, ծաղիկը բաց վարդագույն կամ բաց մանուշակագույն է: Հովանոցաձև ծաղիկները դասավորված են ցողունների և կողքային ցողունների ծայրին: Աշնանը կամ վաղ գարնանը, հավաքում են արմատները:

Արմատները ունեն սուր հոտ, սրանք մաքրում են հողից, լվանում են սառը ջրում և օդափոխում են 1—2 ժամ: Այնուհետև չորացնում են վառարաններում 40—45 ջերմաստիճանի տակ: Պետք է զգուշանալ կատուներից: Հոտն առնելով, նրանք ոչնչացնում են արմատները:

## ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ՄԱԶԻԿՆԵՐ



Սա արդեն վայրի վիճակում չի աճում: Սրա մազիկները հավաքում են կողրերի հասունացման ժամանակ: Զգուշությամբ բացում են փրերը, հանում մազիկները և չորացնում:

## ԾՈՂԱՎԱՐԴ (կուժկոտրուկ)



Գարնան առաջին ծաղկող բույսերից է: Ծաղկում է ապրիլ-մայիսին անտառի բացատներում, մարգագետիններում, տափաստաններում և թեքում է իր դեղին պսակը դեպի արևը: Հեռվից երևում է: Պետք է հավաքել ծաղկման սկզբից՝ մինչև պտղի թափվելը: Կտրվում է դանակով ամբողջ վերգետնյա տերևային մասը: Չորացնում են դանդաղորեն, բացօթյա: Չորանալուց ծաղիկները և կանաչ մասը գունաթափվում են: Ծաղիկները և ցողունը չի կարելի բերանը տանել. թունավոր են:

## ԽՆԶՈՐԱԾԱՂԻԿ (մորմ)



Բազմամյա խոտաբույս է, դեղին ծաղիկներով: Աճում է չոր մարգագետիններում, դաշտերում, ճանապարհների մոտիկ: Կտրում են ցողունի վերին մասը: Չորացնում են ստվերում, լավ օդափոխված սենյակում: Դասավորում են բարակ շերտերով:

## ՀՈՎՏԱՇՈՒՇԱՆ



Երբ անտառում վերջանում է ձյունը և չորանում հողը, բացվում են հովտաշուշանի ծաղկային ցողունը, սպիտակ զանգակիկներով: Աճում է ստվերոտ, տերևաշատ ու խառն անտառներում: Հովտաշուշանի ծաղիկները հավաքում են ծաղկման սկզբին: Տերևները չի կարելի պոկել արմատով: Պետք է չորացնել արագ, հավաքման օրը, անպայման ստվերում, դասավորել բարակ շերտով:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

ՆԿ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Ն. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05699։ Պատվեր՝ 774։ Տպաքանակ՝ 63900։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 3 IX 1970 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.






## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՉԱՅՆՎՈՐԴ «ԱՄԵՆԱ»

1. Երկրագնդի ամենաերկար գետը։ 2. Երկրագնդի ամենամեծ անապատը։ 3. Երկրագնդի ամենաջրառատ գետը։ 4. Երկրագնդի ամենահզոր ջրվեժը։ 5. Երկրագնդի մոտ գտնվող ամենամեծ լուսատուն։ 6. Ասիայի ամենահզոր հրաբուխներից։ 7. ՍՍՀՄ ամենաքայքայված լեռնաշղթան։ 8. Եվրոպայի ամենամեծ քաղաքը։ 9. ՍՍՀՄ ամենակարճ, լայն և ջրառատ գետը։ 10. Ամենացուրտ աշխարհամասը։ 11. Աստղային երկնքի ամենապայծառ մարմնի հայկական անունը։ 12. Երկրագնդի ամենամեծ կենդանին։

Չայնվորդը լուծելու համար փնտրվող բառի տառերը համապատասխան վանդակներում տեղադրել այնպես, որ նախորդ բառի վերջին տառը հանդիսանա հաջորդ բառի առաջին տառը։




Կազմեց՝ ԱՐՇԱԼՈՒՅՍ ԿԻՐԱԿՈՍՅԱՆԸ

